№ 10 1958 թ.
ՀՈԿՏԵՄԲԵՐ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ԵՐԳ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

Աչքերի մեջ գարնան արևը փայլուն,
Դեմքը՝ հողմի, մրրիկների մեջ այրված.
Մի գեղեցիկ, քաջ պատանի է քայլում.
Կուրծքը փառքի նշաններով զարդարված:

Նա ծնվել է գնդակների երգի տակ,
Հոկտեմբերյան հրդեհների մեջ ահեղ
Եվ իր ձեռքում ծածանել է անխորտակ
Մեր հաղթության դրոշները փառահեղ:

Նժույգ նստած Բուդյոննու հետ սլացել,
Մարտնչել է նա ցրտաշունչ տափում.
Հազար հողմեր ու հրդեհներ է անցել
Եվ կոփվել է, ինչպես պողպատն է կոփվում:

Մեծ Լենինն է նրան սիրել հայրաբար,
Տվել այնքա՜ն երազանքներ ու թևեր.
Ու նա սրտում Լենինի լույսը անմար՝
Միշտ ճախրել ու սավառնել է դեպի վեր:

Նվաճել է նա երկինքը կապուտակ
Ու հողմաշունչ բևեռներ է նվաճել.
Նրա հզոր, ստեղծարար ձեռքի տակ
Վառ գարուններ ու ծաղիկներ են աճել.

Իսկ երբ նորից սև հողմերն են սլացել,
Ալեկոծվել են մեր ծովերը վրդով,
Բարձրացել է, ոսոխի դեմ գնացել
Մատրոսովի և Հունանի մեծ սրտով:

Եվ նա հիմա իր ձեռքերով ամրակուռ
Խաղաղության դրոշներն է ծածանում.
Նա կերտում է, կառուցում է ամենուր,
Առատության ոսկե սերմերն է ցանում:

Սանձում է նա ընթացքն ահեղ գետերի
Եվ ջրերից լույս ու բարիք է հանում,
Նվաճում է ոլորտները եթերի,
Գարուններ է փռում հեռու խոպանում:

Աչքերի մեջ գարնան արևը փայլուն,
Դեմքը՝ հողմի, մրրիկների մեջ այրված.
Մի գեղեցիկ, քաջ պատանի է քայլում.
Կուրծքը փառքի նշաններով զարդարված:








# ՀԵՐՈՍՈՒԹՅԱՆ ՃԱՄՓԱՆ

## ՔՈ ԱՎԱԳ ԵՂԲԱՅՐԸ

Ամենուր քեզ հետ է նա, քո ավագ եղբայրը՝ դըպրոցում, ճամբարում, լեռնային արշավի ժամանակ և նույնիսկ այն պահին, երբ դու անկողնում անուշ քուն ես մտել, նա գրասեղանի առաջ նստած բլոկնոտում ինչ-որ բաներ է գրում, ջնջում, հաշիվներ անում: Նա մտածում է, թե ինչ անի, որ վաղը քո օրն հետաքրքիր անցնի, որ դու լավ սովորես, պիտանի մարդ դառնաս։

Այն պահին, երբ դու պիոներական ճամբարում անտառի հովասուն եզրին ծաղիկներ ես հավաքում և բռնում թիթեռներ, նա հեռու Ղազախստանում արևի կիզիչ ճառագայթների տակ խոպան հողերն է մշակում, որ դու մեծանաս առատության մեջ, որ դու կարիք չունենաս երբեք: Նա իր ջլուտ ձեռքերով բարձրաբերձ շենքեր է կառուցում, որ դու լավ, ընդարձակ բնակարան ունենաս. խոր ձորերի միջով, լեռնային սրընթաց գետերի վրայով ու բարձր սարերի լանջերով նա գազամուղ խողովակներ է անցկացնում, որ քո բնակարանում տաք ու հարմարավետ լինի։

Այդպիսին է քո ավագ եղբայրը՝ քաջ ու անձնվեր, հոգատար ու բարի: Քո ավագ եղբայրը, պիոներ՝ Կոմերիտմիությունը, որը պարտիայի կոչով չտեսնըված սխրագործություններ է գործում ամենուր և ամեն ժամ:

Լենինյան Կոմերիտմիությունն ահա բոլորեց իր քառասուն տարին:

Քառասուն տարի:

Հինգ շքանշան է ստացել նա քառասուն տարվա ընթացքում, իսկ ամեն մի շքանշան իր պատմությունն ունի: Դու արդեն կարդացել ես այդ շքանշանների մասին, իսկ այսօր, պիոներ, քո ավագ եղբոր քառասնամյակի օրը, եկ նորից անցնենք նրա երկար ու սխրանքներով լի ուղիով: Չէ որ դու ձգտում ես ամեն ինչով նմանվել քո կոմերիտական եղբորը, չէ որ վաղը դու էլ ես անցնելու Կոմերիտմիության ճանապարհով: Այդ դու պիտի շարունակես նրա փառապանծ համբավն ու հերոսական էստաֆետայի դրոշը հանձնես կոմերիտական հասակի հասած այսօրվա հոկտեմբերիկներին: Քեզ համար շատ օգտակար կլինի վերհիշել այդ ճամփան:





## ԱՌԱՋԻՆՆԵՐԸ

Մոսկվա, Կարմիր հրապարակ: Այստեղ Լենինի և Ստալինի մարմարակերտ դամբարանն է, իսկ դամբարանի աջ ու ձախ կողմերում, Կրեմլի հինավուրց պարսպի երկարությամբ ձգվում են արծաթավուն եղևնիները, որոնք ասես պատվո պահակ են կանգնել նրանց շիրիմների վրա, որ ընկան մեր այսօրվա պայծառ կյանքի համար: Ռևոլյուցիայի մարտիկներն են դրանք, Մոսկվայի հոկտեմբերյան զինված ապստամբության հերոսները: Ահա նրանց անունները փորագրված են ծաղիկներով պատած գերեզմանները երիզող մարմարի վրա: Շատերի կողքին մենք կարդում ենք նաև «Սերգեյ Բարբուլին», «Նիկոլայ Ժերբանով», «Լուսիկ Լիսինյան» անունները: Դրանք հենց այն առաջիններն են, առաջին կոմերիտականները, որոնք ընկան դեռևս չտեսած ռևոլյուցիայի լույսը, բայց ռևոլյուցիայի հաղթանակի անխախտ հավատով լի:

Նրանց թիվը շատ էր: Նրանք ամենուր՝ Կրասնայա Պրեսնյայում, Լեֆորտովոյում, Զամոսկվորեչյեյում համալրում էին զինված ապստամբության ելած բանվորների, կարմիր գվարդիականների շարքերը, ընկնում բարիկադների վրա՝ կադետների և յունկերների դեմ մղվող մարտերում:

Երբ բանվորներն ու զինվորականի շինել հագած գյուղացիները սկսեցին գրոհը Ձմեռային պալատի վրա և երբ «Ավրորա» հածանավն իր հրանոթներով ավետեց աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման մասին, Պետրոգրադի փողոցների և հրապարակների սալահատակները ներկվեցին նաև երիտասարդ կոմունիստների կարմիր արյունով:

## ԲՈԼՈՐԸ ՄԵԿՆԵԼ ԵՆ ՌԱԶՄԱՃԱԿԱՏ

Սոցիալիստական Ռևոլյուցիան հաղթանակեց:

Ստեղծվեց աշխարհում առաջին պետությունը, ուր վերացվեց մարդու շահագործումը մարդու կողմից, ուր երկիրն սկսեցին կառավարել հասարակ մարդիկ՝ բանվորներն ու գյուղացիները: Լուրն իսկույն տարածվեց ամբողջ աշխարհում: Իսկ հարուստներն ու կապիտալիստները քնած չէին, նրանք վախենում էին, թե Ռուսաստանի օրինակին կարող են հետևել նաև իրենց բանվորները, որ Ռուսաստանի կապիտալիստների ու կալվածատերերի նման իրենք էլ կզրկվեն հողից ու գործարաններից: Եվ նրանք որոշեցին ինչ գնով էլ լինի տապալել սովետական կարգերը:




Զենքով ու զորքով նրանք ելան մեր երիտասարդ պետության դեմ: Ելան հյուսիսից ու հարավից, արևմուտքից ու արևելքից, թվով տասնչորս պետություն, աշխարհի ամենախոշոր պետությունները՝ Անգլիան ու Ամերիկան, Ֆրանսիան ու Գերմանիան, ելան նաև Ռուսաստանից փախած գեներալներն ու հարուստները:

Սկսվեց քաղաքացիական պատերազմը:

«Սոցիալիստական հայրենիքը վտանգի մեջ է» կոչ արեց պարտիան և բանվորներն ու գյուղացիները ելան պաշտպանելու իրենց հայրենիքը: Ելան նաև կոմերիտականները: Կամավոր կերպով ռազմաճակատ մեկնող կոմերիտականների թիվ չկար: Պատանիներն ու աղջիկները խմբերով էին դիմում տալիս, ամբողջ կազմակերպություններով, ամբողջ շրջկոմներով: Շատ շրջկոմների դռների վրա այսպիսի հայտարարություններ հայտնվեցին. «Շրջկոմը փակ է: Բոլորը



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳՎԱՐԴԻԱ

*Հին ռևոլյուցիոն երգերից*

Առաջ, դեպի բացվող այգը.
Մեր ընկերներ մարտական.
Լոկ սվինը և գնդակը
Պիտի հարթեն մեր ճամփան։

Քայլիր առաջ համր ու հաստատ,
Դրոշդ վեր բարձրացրու.
Դու գվարդիա երիտասարդ
Բանվորի ու գյուղացու։

Ստրկային աշխատանքը
Մենք մեր կաշվին ենք փորձել.
Պատանության մեր հասակը
Մութ զնդանում է անցել։

Այդ անցյալը թողել է հար
Հոգուդ շղթա ու արցունք.
Դու գվարդիա երիտասարդ
Բանվորի ու գյուղացու։

Հնոցի դեմ մեր ճակատը
Քրտինքով էր ողողվում.
Սակայն դառը մեր վաստակը
Լոկ ուրիշն էր վայելում...

Մեզ աշխատանքը այդ դաժան
Կռեց-կոփեց որպես թուր.
Դու գվարդիա երիտասարդ
Բանվորի ու գյուղացու։

Մենք պարզել ենք դրոշակը
Եկեք, ի մի հավաքվենք.
Մեկտեղ հիմնենք մեր նոր կյանքը.
Ռեսպուբլիկան մեր հիմնենք։

Թող աշխատանքն իշխի ազատ.
Մի ընտանիք դառնանք ձույլ.
Ի մարտ, գվարդիա երիտասարդ
Բանվորի ու գյուղացու։

մեկնել են ռազմաճակատ»։ Կոմերիտականները լրացնում էին նոր կազմակերպվող Կարմիր Բանակի շարքերը, կոմունիստական ջոկատները, որոնք գնում էին զորամասի առջևից։ Նրանք ռազմաճակատում հերոսության չտեսնված օրինակներ էին ցույց տալիս, կռվում էին մինչև վերջին փամփուշտը, երբ վերջանում էր փամփուշտը սվիններով էին գրոհի գնում։

Քաղաքացիական պատերազմի պատանի հերոսները հետախուզության էին գնում թշնամու թիկունքը և շատ արժեքավոր տեղեկություններ էին բերում հրամանատարությանը, իսկ երբ այնպես էր պատահում, որ ընկնում էին թշնամու ձեռքը, նրանք հերոսաբար մեռնում էին, սակայն ոչ մի խոսք չէին ասում թշնամուն։

1918 թվականի օգոստոսին տասնյոթամյա կոմերիտական Աֆանասևը կամավոր կերպով Կարմիր Բանակ գնաց։ Հենց առաջին օրերին աչքի ընկավ իր քաջությամբ և նրան կոմունիստական ջոկատ տեղափոխեցին։ Միշտ զորամասի առջևից գնալով, նա հերոսության օրինակ էր ցույց տալիս։ Այդ փոքրամարմին, նիհար տղան կռվում էր հսկայի պես. ոչ մի բան նրան չէր վախեցնում՝ ոչ թշնամու գնդակը, ոչ սվինը։ Մի անգամ այնպես պատահեց, որ զունդը սկսեց նահանջել, որովհետև թշնամին թվով մի քանի անգամ գերազանցում էր մերոնց։ Կոմերիտական Աֆանասևը իր գնդացրային տասնյակով պաշտպանեց կամուրջի մատույցները այնքան ժամանակ, մինչև զունդը վերադասավորվելով սկսեց դիմադրել թշնամուն։

Մի տարի չանցած Աֆանասևի մատաղ կյանքի թելը կտրվեց։ Նա զոհվեց թշնամու մեծաթիվ զինվորների դեմ կռվելիս, բայց մինչև վերջին վայրկյանը կռվեց հերոսաբար։ Նա գնդացրից արճճի կարկուտ էր թափում հարձակվող սպիտակգվարդիականների վրա, իսկ երբ գնդացրի ժապավենները դատարկվեցին, նա ատրճանակով էլի երեք մարդ սպանեց։

Աֆանասևի նման պատանի հերոսները անթիվ անհամար էին Կարմիր Բանակում, նրանք մեծ դեր խաղացին օտարերկրյա ինտերվենտների և սպիտակգվարդիականների դեմ մղվող պայքարում։

Շուտով քաղաքացիական պատերազմն ավարտվեց, նրանք, որ եկել էին հեռավոր երկրներից, որպեսզի տապալեն սովետական երիտասարդ պետությունը, իրենց գերեզմանը գտան Կուբանում և Ուկրաինայում, Հյուսիսում և Հեռավոր Արևելքում։ Սկսվեցին խաղաղ շինարարության տարիները և





Պարտիան կոմերիտմիությանը նորանոր հանձնարարություններ տվեց:

## ԽԱՂԱՂ ՏԱՐԻՆԵՐ

Երկար տարիներ Ռուսաստանը պատերազմ էր մղել: Երկիրը քայքայվել էր, հյուծվել: Երբ քաղաքացիական պատերազմն ավարտվեց և օկուպանտները ետ շպրտվեցին մեր սահմաններից, սկսվեց երկրի քայքայված տնտեսության վերականգնումը: Հարկավոր էր վերականգնել ոչ միայն հինը, այլև ստեղծել նորը: Պետք էր նոր արդյունաբերություն ստեղծել, նոր ինդուստրիա, որպեսզի կապիտալիստներն ու կալվածատերերն այլևս փորձ չանեին կասեցնելու սոցիալիզմի կառուցումը:

Պարտիայի կոչով կոմերիտմիությունը ձեռնամուխ եղավ խաղաղ շինարարության մեծ գործին և անօրինակ սխրանքներ գործեց: Բոլոր նորակառույցներում կոմերիտական բրիգադաներ ու ջոկատներ կային, որոնք միշտ գնում էին առջևից:

Երբ 1928 թվականի աշնանը սկսվեց առաջին հնգամյակը, երիտասարդությունը ջերմ արձագանք տվեց պարտիայի կոչին: 250 հազար պատանիներ ու աղջիկներ մեկնեցին խոշորագույն նորակառույցները՝ Դնեպրոստրոյ, Ստալինգրադի և Խարկովի տրակտորային գործարանները, Մագնիտոստրոյ, Թուրքսիբի երկաթուղին: 10 հազար հոգի կոմերիտական ուղեգրերով գնացին Մոսկվայի Մետրոպոլիտենը կառուցելու:

Հեռավոր տայգայում, Ամուր գետի վրա սկսվեց առաջին կոմերիտական քաղաքի կառուցումը: Երբ երիտասարդների առաջին խմբերն եկան Կոմսոմոլսկ, այնտեղ ոչ միայն քաղաք չկար, այլև չկար որևէ բնակավայր: Դեսանտի աղջիկներն ու պատանիները սկսեցին ապրել ուղղակի տայգայում, բաց երկնքի տակ, իրենց ձեռքով պատրաստած թողտիկներում ու





վրաններում: Ցուրտ ու անձրև էր գալիս, սառնամանիքներ էին լինում, բայց երիտասարդները դրանից չէին ընկճվում: Նրանք հավատացած էին, որ քաղաքը կկառուցեն և կառուցեցին հեռավոր արևելքի այդ խոշորագույն արդյունաբերական կենտրոնը, իրենք էլ դարձան այդ քաղաքի առաջին բնակիչները:

Այժմյան Գորկի քաղաքի մոտ, Օկա գետի վրա պետք է բարձրանար մեր երկրի խոշոր նորակառույցներից մեկը՝ ավտոգործարանը. այնտեղ նույնպես մեծ թվով կոմերիտականներ մեկնեցին: 1930—1931 թվականների ձմռանը սոսկալի սառնամանիքներ էին, բայց անհրաժեշտ էր շինարարությունը չդադարեցնել, անհրաժեշտ էր հաղթահարել Օկայի ընթացքը և կոմերիտականները երեսուն աստիճան ցրտի տակ մինչև գոտկատեղը սառցաջրի մեջ աշխատում էին օր ու գիշեր: Նրանց օգնության հասավ երիտասարդության մի նոր խումբ, 2 700 հոգուց բաղկացած կոմերիտական մի դիվիզիա և շինարարության պլանները ժամկետից շուտ կատարվեցին:

Ինչեր ասես, որ չարեցին կոմերիտականները այդ տարիներին. նրանք տասնյակ հազարներով մեկնեցին ածխահանքերն ու գործարանները, անտառներն ու նորաստեղծ կոլտնտեսությունների դաշտերը: Միաժամանակ, երիտասարդ բանվորները ու գյուղացի պատանիները աշխատանքից հետո սովորում էին բանֆակներում և երեկոյան դպրոցներում: Նրանք գիտեին, որ մեր երկրի արժանի քաղաքացիներ դառնալու համար անհրաժեշտ է սովորել, տիրապետել գիտելիքներին: Եվ նրանք սովորում էին:

## ԹՈՂ ՑԱՍՈՒՄՆ ԱՐԴԱՐ ԵԼՆԻ ԱԼԻՔԻ ՊԵՍ

Այն ժամանակ, երբ մեր երկիրն իր խաղաղ կյանքն էր կառուցում, ֆաշիստական հորդաները թաքուն սողոսկում էին դեպի Սովետական Հայրենիքի սահմանները: Եվ մի գիշեր էլ մեր արևմտյան ամբողջ սահմանով մեկ նրանք անակնկալ կերպով հարձակվեցին Սովետական Միության վրա:

Սկսվեց Հայրենական Մեծ պատերազմը:

Չնայած հարձակումն անսպասելի էր, մեր քաջարի սահմանապահները ուժեղ դիմադրություն ցույց տվեցին թշնամուն: Որոշ տեղերում նրանք շարունակում էին պաշտպանել սահմանը նույնիսկ այն ժամանակ, երբ թշնամին հարյուրավոր կիլոմետր առաջ էր գնացել: Հայրենական պատերազմի ժամանակ առաջինը Սովետական Միության հերոսի կոչում ըս-



տացան կոմերիտական օդաչուներ Խարիտոնովը, Ժուկովը և Զդորովցևը:

Պատերազմի առաջին օրերն էին: Կոմերիտական օդաչու Պյոտր Խարիտոնովը իր կործանիչով պաշտպանում էր Լենինգրադի օդային մատույցները: Ֆաշիստական ռմբակոծիչներից մեկը աշխատում էր ճեղքել Լենինգրադ: Պյոտր Խարիտոնովը օդում նրա հետ մարտի բռնվեց: «Ինչ գնով էլ լինի, չպետք է թույլ տալ, որ թշնամին անցնի Լենինգրադ» մտածում էր խիզախ կոմերիտականը: Բայց շուտով նրա փամփուշտները վերջացան: Օգտվելով դրանից, ֆաշիստական ուրուրը բռնեց Լենինգրադի ճամփան, բայց Պյոտր Խարիտոնովը հարձակվեց նրա վրա և իր պտուտակներով սղոցեց հակառակորդի պոչը: Թշնամու օդանավը սև ծուխ արձակելով, ցած ընկավ: Այդ օրերին Խարիտոնովի օրինակին հետևեցին կոմերիտական-օդաչուներ Ժուկովը և Զդորովցևը:



Դեռևս պատերազմը չէր սկսվել, երբ Ժենյա Ռուդնևան, որ սովորում էր Մոսկվայի դպրոցներից մեկում, իր օրագրում գրում էր. «Մարդու համար ամենաթանկ բանը կյանքն է, որը մի անգամ է տրվում նրան: Մարդ պետք է այդ կյանքն ապրի այնպես, որ հետագայում տանջող ցավ չզգա անիմաստ ապրած տարիների համար, որ ամոթը չայրի նրան մանր ու անազնիվ անցյալի համար, որպեսզի մեռնելիս նա կարողանա ասել, թե ամբողջ կյանքը և բոլոր ուժերը տվել է աշխարհում ամենագեղեցիկ բանին - մարդկության ազատագրմանը...

...Ես կոմերիտուհի եմ և ընդհանուր գործը ինձ համար թանկ է անձնականից... Եվ եթե պարտիան, բանվոր դասակարգը պահանջեն, ես կմոռանամ աստղաբաշխությունը և կդառնամ մարտիկ ու սանիտար...»:

Երբ Հայրենական պատերազմն սկսվեց, կոմերիտուհի Ժենյա Ռուդնևան իսկապես դարձավ մարտիկ, մարտիկ օդաչու և 645 մարտական թռիչք կատարեց: 1944 թվականի ապրիլի 9-ին խիզախ կոմերիտուհին ընկավ հերոսի մահով: Սովետական կառավարությունը Ռուդնևային իր կատարած սխրագործությունների համար հետմահու Սովետական Միության Հերոսի կոչում շնորհեց:

Պատերազմից առաջ «Երիտասարդ Գվարդիա» ընդհատակյա կոմերիտական կազմակերպության անդամներից շատերը դեռևս պիոներ էին, նրանք չգիտեին ինչ է հոգսն ու զրկանքը, սովորում էին դպրոցում և ամեն մեկն իր երազն ուներ կյանքում: Բայց ահա եկել էին ատելի օկուպանտները, որոնք ամենուր մահ ու արյուն էին տարածում, երիտասարդությանը բռնի քշում էին Գերմանիա՝ տաժանակիր աշխատանքի, մեծահասակներին գնդակահարում էին ամենաչնչին կասկածների դեպքում անգամ: Պատանի հայրենասերները որոշեցին վրեժ լուծել ֆաշիստներից և Կրասնոդոն քաղաքում ծածանվեց երիտգվարդիականների կարմիր դրոշը: Պատանիները այրում էին գերմանական զենքի պահեստները





ու զորանոցները, վրեժ էին լուծում դավաճաններից, օգնում պարտիզաններին: Երիտգվարդիական Ուլյանա Գրոմովան ասում էր. «Ավելի լավ է մեռնել, քան թե ստրուկ լինել: Երբ ես ընկնեմ գերմանացիների ձեռքը, նրանց ոչ մի խոսք չեմ ասի»: Եվ երբ ստոր դավաճանության շնորհիվ երիտգվարդիականները ընկան գերմանացիների ճանկը, թշնամուն նրանք ոչ մի խոսք չասացին և գնացին մահապատժի՝ գլուխները բարձր պահած, «Ինտերնացիոնալ» երգելով, ինչպես որ վայել էր կոմերիտականներին:

Իսկ ինչպիսի՜ քաջագործություններ կատարեց թշնամու թիկունքում խիզախ կոմերիտուհի Զոյա Կոսմոդեմյանսկայան: Մի անգամ նա Պետրիշչևո գյուղում այրեց գերմանացիների կողմից զբաղեցրած մի քանի շենք և բռնվեց: Նրան դաժանորեն էին հարցաքննում ֆաշիստ դահիճները, այրում էին ձեռքերն ու ոտքերը, ծեծում ու խոշտանգում, բայց Զոյան անընկճելի էր: Նա թշնամուն ոչ մի խոսք չասաց և հերոսի նման գնաց դեպի կախաղան՝ հավատացած, որ հաղթանակը կգա:

Կանցնեն տասնյակ, հարյուրավոր տարիներ, բայց անմոռաց կմնան կոմերիտականներ Ալեքսանդր Մատրոսովի և Հունան Ավետիսյանի անունները, որոնք գիտակցորեն իրենց կյանքը զոհեցին, որպեսզի օգնեն ընկերներին ճակատամարտում: Նրանք երկուսն էլ իրարից անկախ, տարբեր ռազմաճակատներում նույն հերոսությունն արեցին. իրենց մարմնով փակեցին թշնամական հրակնատները և դրանով ստիպեցին մեր առաջխաղացմանը խանգարող գնդացիրներին լռել:

Շատ են, անթիվ անհամար են Հայրենական պատերազմում հերոսացած կոմերիտականները: Շատերը Սովետական Միության հերոսի կոչում ստացան, արժանացան բարձր շքանշանների, բայց ռազմաճակատում խիզախության օրինակ էին ցույց տալիս բոլոր նրանք, ովքեր իրենց ծոցում կրում էին լենինյան կոմերիտմիության տոմսը:

Հեռավոր Սիբիրից ռազմաճակատ էր եկել Վլադիմիր Սուզդալցևը: Նա դեռ շատ ջահել էր, տասնութ տարեկան ընդամենը, բայց անհամբեր սպասում էր այն օրվան, երբ զորամասը գրոհի կանցներ: Սոսիների ջահել անտառում դիրքավորված ստորաբաժանման մյուս կոմերիտականների հետ, Վոլոդյան անընդհատ ուսումնասիրում էր անծանոթ զենքի





բոլոր տեսակները, իսկ ուշ երեկոյան գետնափորում, ճրագի լույսի տակ նամակներ էր գրում Իրկուտսկ, իր մորը, կոմերիտական կազմակերպությանը և խոստանում քաջ ու անվեհեր լինել:

Եվ ահա սկսվեց հարձակումը: Թշնամին կատաղի կերպով դիմադրում էր: Օդը հագեցած էր արճճի բեկորներով, բայց զորքերը առաջ էին գնում, իսկ զորամասի առջևից կոմսորգի հետ միասին առաջ էր գնում նաև պատանի Վոլոդյան: Նա կրակ ու մահ էր թափում ոսոխի վրա, իսկ երբ սվինամարտի էին բռնվում, նրա սվինը խոցոտում էր ոսոխի զինվորներին: Հենց առաջին օրը Վոլոդյան ընկավ հերոսի մահով. մեռնելուց առաջ նա աչքերը մի անգամ էլ բացեց, նայեց առաջ գնացող ընկերների ետևից ու գոհ ժպտաց: Այսպիսին էր չարքաշ կոմերիտական Վոլոդյա Սուզդալցևը:

Նրա նման հենց առաջին օրը զոհվեց Ռյազանցի կոմերիտական սերժանտ Լակինը: Հարձակման գիշերը նա գետնատանը ընկերներով շրջապատված երգում էր: Շատ գեղեցիկ ձայն ուներ Լակինը և շատ էլ սիրում էր երգել: Մյուս օրը նա ընկավ խրամատի եզրին՝ իր սիրած երգը շուրթին: Ինչպիսի երազներ ուներ Լակինը, նա ուզում էր պատերազմից հետո սովորել, աշխատել, բայց ֆաշիստները կտրեցին նրա կյանքի թելը: Եվ հազար-հազարներն իրենց կյանքը զոհեցին, քո այսօրվա երջանիկ կյանքի համար, քո ապագայի համար, պիոնե՛ր:

## ՍԱՆՁՎԱԾ ԳԵՏԵՐ, ԱՆԾԱՅՐ ՀՈՐԻԶՈՆՆԵՐ

Ավարտվեց Հայրենական Մեծ պատերազմը: Հարկավոր էր վերականգնել ավերված քաղաքներն ու գյուղերը, մեր երկիրն էլ ավելի հզորացնել, որպեսզի այլևս ոչ մի ագրեսոր չփորձեր հարձակվել մեր Հայրենիքի վրա: Մեր ժողովուրդը պարտիայի կոչով ձեռնամուխ եղավ այդ մեծ գործին: Կարճ ժամանակամիջոցում վերացվեցին թշնամու ավերածությունները, վերականգնվեցին պայթեցված հանքահորերն ու կամուրջները և Կոմերիտմիությունն այստեղ էլ պարտիայի հավատարիմ օգնականը եղավ:

Թշնամին պայթեցրել էր Ռուսաստանի առաջին խոշոր հիդրոէլեկտրակայանը՝ Դնեպրոգէսը: Կոմերիտմիությունը պատերազմից հետո Դնեպրոգէս ուղարկեց իր երիտասարդ ջոկատները և ահա մեր էլեկտրականության առաջնեկը ծնունդ առավ երկրորդ անգամ:

Անհամար երիտասարդներ մեկնեցին դեպի կոմունիզմի մեծ շինարարությունները՝ Կույբիշևի, Ստալին-



գրադի և հեռավոր արևելքի հիդրոկայանները, որոնք այնտեղ աշխատանքային հերոսության փառքով պսակեցին իրենց։

Հայաստանում սկսվեցին Սևան-Հրազդան կասկադի հիդրոկայանների կառուցումները։ Կոմերիտմիության Հայաստանի կենտկոմը միայն Գյումուշին ուղարկեց մի քանի տասնյակ հազար կոմերիտականների։ Կոմերիտականները առաջինը եկան ապագա հիդրոկայանի շինարարության տեղամասերը։ Այժմյան Լուսավան ավանում առաջին քարը դրեցին կոմերիտականները։ Նրանք առաջինն էին նաև մյուս տեղամասերում և ահա մի քանի տարի հետո Հրազդանի գետի երկարությամբ բարձրացան բանվորական գեղեցիկ ավաններ, սկսեցին աշխատել հիդրոկայանների տուրբինները և էլեկտրական լույսով ողողվեցին մեր քաղաքների փողոցները ու շենքերը, գործարանները ու ֆաբրիկաները։

Իսկ ինչքան երիտասարդներ է Հայաստանի կոմերիտմիությունն ուղարկում հեռավոր Ղազախստան, դեպի խամ ու խոպան հողերը, ուր պարտիայի կոչով Սովետական Միության բոլոր ծայրերից եկած աղջիկները ու պատանիները իրենց անձնվեր աշխատանքով հացահատիկի հսկայական պաշարներ են ստեղծում։

* * *

Ահա թե ինչպիսին է եղել քո ավագ եղբայրը, մի՞թե հնարավոր է պատմել այն ամենը, ինչ նա արել է մեր երկրի համար, քե՛զ համար, սիրելի պիոներ։ Քո ավագ եղբայրը, քաջ ու անձնվեր, ոչ մի դժվարությունից չվախեցող, միշտ առջևից ընթացող քո եղբայրը, որին դու պիտի փոխարինես։

## ՏՈՆԱԿԱՆ ԵՐԳ

### Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Ալ դրոշներով անթիվ-անհամար
Զուգել ենք այսօր հայրենիքը մեր.
Անցնում ենք ահա դեմքերով պայծառ
Ու երգում զվարթ, տոնական երգեր...

Երգում ենք մեր հողն ու ջուրը անգին.
Մեր հայրենիքը՝ կանաչ ու ազատ,
Որ սնել է միշտ մեր ժողովրդին,
Ինչպես իր որդուն մայրը հարազատ։

Մեր պապերին ենք մենք սրտանց երգում,
Որ հաղթ ձեռքերում և մուրճ, և վահան՝
Պերճ կոթողներ են կառուցել երկրում
Եվ պահպանել են ոսոխից դաժան։

Երգում ենք խիզախ հայրերին մեր սեգ,
Որ հաղթ կռվեցին և շատերն ընկան,
Որ մեր երջանիկ սերունդը երբեք
Չտեսնի շղթա, արցունք ու զրկանք։

Ալ դրոշներով անթիվ անհամար
Զուգել ենք այսօր հայրենիքը մեր.
Անցնում ենք ահա դեմքերով պայծառ
Ու երգում զվարթ, տոնական երգեր...





Հ. ԳՅՈՒՐՋՅԱՆ *ՇԻՐՎԱՆԶԱԴԵ*



## ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԻՑ

*Սիրելի Սերյոժկա.*

*Մի քանի օրից կլրանա քո երեք տարին: Շնորհավորում եմ թանկագին տղաս, պինդ-պինդ համբուրում և առողջություն եմ մաղթում: Շնորհակալ եմ այն մեծ բավականության համար, որ դու պատճառեցիր ինձ քո գոյությամբ այս երեք տարվա ընթացքում, և մաղթում եմ, որ ծլես-ծաղկես մայրիկիդ, քույրիկիդ, եղբայրներիդ ու հայրիկիդ ուրախության և երջանկության համար:*

*Պինդ գրկում ու համբուրում եմ:*

*Ինչպե՞ս է քեզ դուր գալիս թմբուկը, թանկագին Սերյոժկա:*

18/I—1917 Սարատով — *Քո պապա*

*Սիրելի երեխաներ*

*Ինչպե՞ս եք անցկացնում ժամանակը, ինչպե՞ս են ձեր պարապմունքները: Քո բացիկը, սիրելի Սուրի՛կ, ստացա: Գնու՞մ եք արդյոք թատրոն: Դա անհրաժեշտ է, երեխանե՛ր: Բելինսկին իր ինչ-որ մի հոդվածում հարցնում է.—«Գնու՞մ եք արդյոք թատրոն, օ՛, գնացեք թատրոն, գնացեք և, եթե հնարավոր է, մեռեք այնտեղ»: Նա շատ տարվող մարդ էր,— ես իհարկե, ոչ որի խորհուրդ չեմ տալիս թատրոնում մեռնել, բայց գնալ անհրաժեշտ է:*

*Այն բոլորը, ինչ բեմադրվում է կլասիկներից, գոնե այդ անհրաժեշտ է տեսնել.—Շեքսպիրից, Շիլլերից, Իբսենից, Օստրովսկուց, օպերայից բոլորը և այլն:*

*Նոր պիեսները գնացեք տեսեք իմացողների խորհուրդով:*

*Աշխատեցեք ազատ ժամանակ մարմնամարզությամբ զբաղվել, երևակայեցեք, ես օրը երկու անգամ 10—15 րոպե կատարում եմ և շատ գոհ եմ: Ժամանակ գտնել միշտ կարելի է: Քեզ էլ անհրաժեշտ է այդ, սիրելի Մանյա: Համբուրում եմ ձեզ բոլորիդ—Սուրենին, Մանյային, Լյովային և Սերյոժային:*

1917 թ. փետրվարի 7-ին. Սարատով — *Ձեր պապա*



# ՈՒՍՈՒՑԻՉ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ



Բարձրահասակ էր, չոր, ձեռքերն այնքան երկար էին, որ թվում էր, թե մեկը հատկապես ձգել էր ծնկներին հասցնելու համար։ Աչքերն անընդհատ կարմրած էին, դրանից ապխտադրում էր շարժերը։ Փոքրիկ աչքեր ուներ, ցորենագույն սար-սար բեղեր, ինչպիսիք տեսել էինք մենք «Դոն Կիխոտ» գրքի նկարներում։ Բարակ, գունատ շուրթերը միշտ փոքր ինչ ծուռ էին խորամանկ ժպիտից։

Զարմանալի ընդունակություն ուներ՝ միանգամանակ երկու ձեռքով աշխատելու։ Մեկով գրատախտակին շրջանակ էր գծում, մյուսով ջնջում թվաբանական խնդիրները։ Խոսում էր անշտապ, մերթ ընդ մերթ դասն ընդհատում էր, սրան-նրան ներկայությունն անելու.

— Լսի՛ր, անասունի պոչ...

Այս նախադասությունը նա ասում էր ձայնի բոլոր երանգներով, թե՛ քաղցրության ժամին, թե՛ ծիծաղելիս, թե՛ այն ժամանակ, երբ հանդիմանում էր մեկին, թե նույնիսկ այն պահերին, երբ գոհ էր լինում աշակերտի պատասխանից։

Մենք քաշվում էինք նրանից, ասենք նրանից ակնածում էին նաև երկրորդ ուսուցիչները, համենայն դեպս միջանցքում նրան հանդիպելիս ծռվում էին, լռում ու խոսքի զուլս տալիս։

— Բարև ձեզ, ընկեր Բալայան...

Բալայանը պատասխանում էր միևնույն ձևով, մերթ աջ, մերթ ձախ ձեռքը տանելով դեպի ճաղատ գլուխը։

Հինգերորդ դասարանում նա մեր դասղեկն էր։ Սովորաբար մեկին դասարան մտնելով հարցնում.

— Դասկո՛մ։

Ես ոտքի կանգնեցի։

— Նստի՛ր, նկարի կառնեմ...

Նկարի առավ։ Դրանից հետո երեք անգամ իրար հետևից դաս հարցրեց ու երրորդ անգամ ասաց.

— Այնպես էլ լավ չես սովորում, դասկոմ...

Ոչ ոք, նույնիսկ Արշակը չէր կարողանում «սիրշելով» նրանից թվանշան պոկել։

— Կա՛ց-կա՛ց, — խորամանկ ժպտում էր նա, — բամի մի տաս, չգիտես։

Նրա դասերին, ինչպես ասում են, դասարանում ճանճի տզզոցը լսվում էր, նստում էինք, վախով սպասում, թե ում դաս կհարցնի. չնայած բոլորս էլ թվաբանություն սովորում էինք առանձին ջանասիրությամբ։

Որքան էլ զայթակղությունը մեծ լիներ, համենայն դեպս մեր արածը խոշոր հիմարություն էր և հանցանք։ Այդ մենք զգացինք դասամատյանում թվանշանները փոխելու հաջորդ վայրկյանին։ Երբ զանգը հնչեց արդեն զղջացել էինք ու շփոթված նստել մեր տեղերում։ Իմ սիրտը թպրտում էր, ինչպես լինում է ամենադժվար քննություններից առաջ։

Դասամատյանը գողացանք ու թվանշանները փոխեցինք՝ ես, Արշամն ու Թաթիկը։ Ես կանգնեցի դռան մոտ, որպեսզի Արշամին իմաց տայի, եթե հանկարծ մեկն ու մեկը դասարանին մոտենար։ Արշամը ուսուցչական սեղանի մոտ կանգնած հետևում էր իմ ազդանշաններին, իսկ Թաթիկն «ուղղում» էր։ Վախեցած Արշամն ամեն վայրկյան շտապեցնում էր նրան.



— Թա՛թ, որդի, ի՞նչ ես թաթառում...
— Թա՛թ, բանական է, էլ հարկավոր չի...

Երկուսներս չորսերի էինք փոխվում, երեքներս՝ հինգերի, ու մասնավորապես երեքս էլ դառնում էինք օրինակելի աշակերտ։

Աշխարհագրության ուսուցչուհին ոչինչ չընկատեց ու այդ օրը Արշամին դաս հարցնելով ասաց.

— Արդեն երեք անգամ չորս ես ստացել, գոհ եմ, եթե այսպես շարունակի, քառորդի վերջում կարող ես և գերազանց ստանալ...

Բայց ընկեր Բաղդալյանը նկատեց իսկույն։ Նա երկար ժամանակ դասամատյանին էր նայում, շուրթերին խաղում էր ծանոթ խորամանկ ժպիտը, ու մեր սրտերը նվաղում էին սարսափից։

Համենայն դեպս ոչինչ չասաց։ Ամեն օրվա նման, միաժամանակ երկու ձեռքով աշխատելով, բացատրեց դասը։

Մենք աստիճանաբար խաղաղվեցինք՝ մտածելով, թե փոթորիկն անցավ։

Դասը վերջացավ։

Մենք թեթևացած շունչ քաշեցինք ու սկսեցինք գրքերը հավաքել, բայց հանկարծ ընկեր Բաղդալյանն ասաց.

— Դանկո՛մ։
— Լսում եմ,— շփոթված պատասխանեցի ես։
— Պիոնե՞ր ես։
— Այո։
— Լավ է, ո՞վ է արել։
— Չգիտեմ,— ակամա դուրս թռավ բերանիցս։ Իսկույն գլխի ընկա, որ ինքս ինձ մատնեցի...
— Ուրեմն հասկացար, թե ինչի մասին է խոսքը,— ծիծաղեց ընկեր Բաղդալյանը։

* * *

Դիրեկտորը մեկ-մեկ իր մոտ կանչեց դասարանի աշակերտներին։ Ես հանցանքն ամբողջովին ինձ վրա առա, բայց նա չհավատաց։

— Հիմար ընկերասիրություն է,— ասաց նա,— բնավ. իհարկե, հայտնի է եղել, բայց դու չես փոխել, դու համարյա թե փոխելու թվանշան չունես։

Բոլորի նման Արշամն ու Թաթիկն էլ հայտարարեցին, թե իրենք տեղեկություն չունեն։ Երեկոյան նրանք միասին եկան մեր տուն։ Թաթիկն իր հետ բերել էր ու ինձ նվիրեց իր պատրաստած ինքնաթիռի մոդելը, որով նա մրցանակ էր շահել ու սարսափելի պարծենում էր դպրոցում։ Իսկ Արշամը թևը գցեց ուսիս ու ասաց.

— Բա ի՞նչ, էդպես պիտի՞ լինի իսկական ընկերը։

Նրանց գնալուց հետո ես երկար մտածում էի։ Մի կողմից ինձ շոյում էր Արշամի ասածը, ես ինձ հերոս էի զգում այն բանի համար, որ չէի մատնել ընկերներիս, մյուս կողմից՝ սրտումս մի ինչ-որ դառը զգացում կար, որ ավելի էր սաստկանում, երբ աչքս ընկնում էր գրապահարանի վրա դրված մոդելին։

Հաջորդ օրը, ինձ համար անակնկալ, մեր տուն եկավ ընկեր Բաղդալյանը։ Ծնողներս հյուր էին գնացել, տանը մենակ էի։

— Մենա՞կ ես,— չգիտեմ ինչու ուրախացավ նա։
— Այո՛,— զարմացած պատասխանեցի ես։
— Շախմատ խաղո՞ւմ ես։
— Մի քիչ,— թոթովեցի։
— Հրաշալի է,— ասաց ձեռքերն իրար շփելով,— բեր, շարիր։

Նստեց սեղանի առաջ ու մի ժամում հինգ ան-

գամ տանը, տվեց ինձ։ «Ինչո՞ւ է եկել», մտածում էի ես՝ պատասխան քայլեր անելով, իսկ նա իմ սխալներին պատասխանում էր ավելի կոպիտ սխալներով ու զայրանում.

Չնկատեցի, դու պարզապես նավակս թռացրիր...

Աստիճանաբար իմ շփոթմունքն անցավ։ Մի պարտիա էլ խաղացինք, որի ժամանակ ես իսկի գլուխ էլ չընկա, թե նա ինչպես ջարդուփշուր արեց իմ թագավորի զինվորներն ու խորամանկ ժպտալով ասաց.

— Մատ։

Վեր կացավ, շնորհակալություն հայտնեց, ժպտաց.

Շախմատ վատ ես խաղում, բայց, իհարկե, հասկանում ես, որ ես դրա համար չեմ եկել։

— Հասկանում եմ։

— Ձե՞ս տալ։

Չեմ տալ։

Հասկանալի է, քեզ թվում է, թե դրանով դավաճանած կլինես ընկերներիդ։ Ուզո՞ւմ ես ասեմ, թե ինչ ես մտածում։ Մտածում ես, թե ընկեր Բաղալյանն եկել է, որ իր շախմատով սիրտս շահի, բա ինչու մինչև հիմա չէր գալիս, եկել է սիրտս շահի, որ ընկերներիս մատնեմ։ Ճի՞շտ գուշակեցի։

— Եվ չեմ մատնի, զայրացած ասացի ես։

Ու՞մ։ Թամթիկին ու Արշամի՞ն։

Ես մնացի ապշած.

Դո՞ւ որտեղի՞ց իմացար։

Ես նորից գլուխ ընկա, որ բռնվեցի։ Սառած կանգնել էի սեղանի առաջ, իսկ նա մանրիկ աչքերով ծակում էր աչքերս։ Գլուխս կախեցի։

Նա, որ պատրաստվում էր հեռանալ, կրկին նստեց։

Նստի՛ր, ասաց ցույց տալով աթոռը.— Նստի՛ր։ Ես ուզում եմ քեզ բացատրել, թե ինչու ուրախացա, երբ իմացա, որ ծնողներդ տանը չեն։ Ձեր արածը միամիտ բան էր։ Հենց առաջին օրը ինձ համար պարզ էր, թե ով է հանցագործը, չէ՞ որ գրեթե միայն Թամթիկի ու Արշամի թվանշաններն էին «ուղղված»։ Քոնից միայն երգեցողության գնահատականն էր փոխվել. երեքի փոխարեն մատյանում հինգ էր գրված, բայց դրանից կարծեմ ձայնդ ավելի դուրեկան չի դարձել... Այո՛, ուրախացա, որ ծնողներդ տանը չեն, նրանք չիմացան, որ դու ստախոս ես, մնաս բարով...

Նրա գնալուց հետո ես լաց եղա։

* * *

Դպրոցն ավարտեցինք։ Ամեն մեկս գնաց մի կողմի վրա. շատ բան աղոտացավ, մոռացվեց, բայց իմ հիշողության մեջ անմոռաց մնաց այս դեպքը։

Այժմ էլ ես երբեմն փողոցում հանդիպում եմ ընկեր Բաղալյանին։ Նա ինձ էլ հենց այնպես է բարևում, ինչպես բոլորին՝ ձեռքերից մեկը դեպի ճաղատ գլուխը տանելով։ Ու ամեն անգամ ես հանկարծ նկատում եմ, որ նրան բարևելիս ձգվում եմ, ինչպես տարիներ առաջ երիտասարդ ուսուցիչներն էին ձգվում դպրոցի միջանցքում։ Ու չգիտեմ ինչու, ամեն անգամ սրտումս մի այրող ցանկություն է առաջանում. ուզում եմ իմանալ, թե ի՞նչ է մտածում այժմ նա իմ մասին, արդյոք հավատո՞ւմ է ինձ։

Իսկ նա երևի ինձ հազիվ է հիշում։ Արդեն ծերացել է. նրա ձեռքի տակով ինձ նման հազարավոր մարդիկ են անցել, դժվար է բոլորին հիշելը, բայց այդ բոլորը, հավատացած եմ՝ հիշում են նրան, բարևելուց առաջ ձգվում և ցանկանում, որ նա հիշի իրենց ու հավատա...

ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ԻՄ ԿՅԱՆՔԻՑ

*Հատվածներ*

## ՄԵՐ ՔԱՂԱՔԸ

Նախ ասեմ, թե ես ով եմ:

Անդրկովկասի մի անկյունում կա մի քաղաք, անունը Շամախի կամ Շիրվան:

Ա՜հ հրաշալի է այդ քաղաքի բնությունը:

Այնտեղ երկինքը կապույտ է, ինչպես փիրուզա, երկիրը բույսերով, ծաղիկներով փարթամ, ինչպես մի սքանչելի պարտեզ: Այնտեղ ձմեռը եղանակը մեղմ է, գարունը, ոչ քամի, ոչ փոթորիկ: Իսկ գարնանը և ամառը բարձրագագաթ ծառերի վրա գիշեր-ցերեկ երգում են անթիվ սոխակներ:

Եվ ինչ համեղ մրգեր կան այնտեղ, եթե գիտենաք, ինչ հոտավետ պտուղներ:

Սուտ չի լինի, եթե ասեմ, որ այդ քաղաքը երկրային դրախտ կլիներ, եթե չունենար մի մեծ դժբախտություն, այն է՝ երկրաշարժը:

Այս է պատճառը, որ մի ժամանակվա հարուստ և փարթամ Շամախին այսօր այնքան անշուք է, խեղճ, աշխարհում մոռացված:

Բայց, չնայելով դրան, մարդիկ այնտեղ էլի ուրախ են, զվարթ: Նրանք սրախոս են, սիրում են կատակներ անել, զվարճանալ: Հարուստ չեն, բայց ինչ-որ ունեն, նրանով գոհ են և պատրաստ կյանքից պես չեն տրտնջում: Բարի մարդիկ են, շատ հյուրասեր, շատ բարեկամասեր: Բայց մեր մեջ ասած, մի քիչ շատախոս են և պարծենկոտ:

Ահա այդ պստիկ և աննշան քաղաքում եմ ծնվել ես սրանից հիսուն ու երկու և կես տարի առաջ, մի գարնանային գիշեր:

## ԻՄ ԾՆՈՂՆԵՐԸ

Իմ հոր անունն էր Մինաս: Նա մի շատ բարձրահասակ մարդ էր, խոժոռ դեմքով, թանձր շիկագույն բեղերով, որ միշտ ծածկած էին պահում նրա սեղմված բերանը:

Օհ, ես այժմ էլ հիշում եմ նրա խորն ընկած կապույտ աչքերը, որոնք թավ ունքերի տակից կայծեր էին արձակում բարկության միջոցներին:

Մորս անունն է Օվսաննա:

Դա մի միջահասակ, բարակ կազմվածքով կին էր, գեղեցիկ դեմքով և թանձր ու գանգուր մազերով: Քաղաքում նրան անվանում էին «Սիրուն Սոնա»:

Նա ոչ միայն դեմքով էր սիրուն, այլև հոգով, սրտով, վարք ու բարքով:



Որքան մայրս մեղմ էր և հեզ, այնքան հայրս խստաբարո էր և հպարտ:

Այդ մարդը քիչ էր ժպտում, ավելի քիչ ծիծաղում: Բայց ազնիվ էր, արդարասեր, ճշմարտախոս: Երբեք սուտ չէր ասում և անվախ ասում էր սուտ խոսողներին: Ոչ ոքից չէր վախենում և ասում էր վախկոտներին. բանի-բանի անգամ նա մեն-մենակ ձիով գիշերները անցել է մութ անտառներ և ձորեր: Քանի՜-քանի անգամ ավազակների է հանդիպել և նրանց հետ հրացանաձգություն ունեցել: Եվ չնայելով իր արկածալի կյանքին, նա ապրեց ութսունհինգ տարի:

Նա ինձ միշտ ասում էր.

— Էյ, Ալեքսանդր, կյանքումդ շատ անգամ փորձանքի կհանդիպես, չվհատես: Թշնամիներ կունենաս՝ զգույշ կաց, բայց մի վախենար: Բարեկամներ կունենաս, հավատարիմ եղիր նրանց, պահանջիր, որ նրանք էլ հավատարիմ լինեն քեզ: Սուտ չխոսես, բայց տես, որ ստախոսների հետ էլ գործ կունենաս, չխաբվես:

Թե հայրս և թե մայրս գրել-կարդալ չգիտեին: Բայց երկուսն էլ զգում էին, որ գրել-կարդալը լավ բան է:

Հայրս ժամանակ չուներ ինձնով զբաղվելու: Տարենը երկու անգամ նա գնում էր



իր չախմախի երկայն հրացանը, արծաթապատ ծոռ կոթանի ատրճանակը, լայն դաշույնը, ձի նստում և գնում Ղարսա քաղաք մի քանի ամիսներով:

Մայրս էր մեծ մասամբ հոգում իմ մասին: Եվ ես, ուղիղն ասած, նրան եմ պարտական, որ այսօր գրել-կարդալ գիտեմ:

## ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ

Յոթ տարեկան էի, երբ մայրս ինձ տվեց ուսումնարան:

Ես միջակ մանուկ էի, ոչ անշնորհք, ոչ էլ մեծ շնորհքով: Աշխատասեր չէի, բայց շատ էլ ծույլ չէի: Էհ, ձեզ նման մի բան էի: Բայց, ներողություն, կարելի է դուք ինձնից լավ եք: Տա աստված:

Ես շատ միամիտ տղա էի: Հա, քանի միտս է, պատմեմ ձեզ իմ միամտության մասին մի զվարճալի բան:

Մի օր ուսուցիչս, որին Սարգիս վարպետ էին կոչում, ինձ վրա բարկացավ: Դասս լավ չէի պատրաստել: Նա ականջս մի լավ քաշեց, հետո բաց արավ դասագիրքս և ցույց տալով դասս, ասաց.

—Տես, էգուց այստեղից մինչև այստեղ ջուր կանես:

Շատ լավ, վարպետ, ջուր կանեմ, — պատասխանեցի ես:

Մեր փողոցից ոչ հեռու կար մի աղբյուր: Մյուս օրը դասագիրքս տարա պահեցի նրա տակ այնքան, որ բոլորովին ջուր դարձավ:

Բերի ուսումնարան և հպարտ-հպարտ ցույց տվեցի վարժապետին:

Սարգիս վարպետը առավ մի կուշտ ծիծաղեց: Բոլոր աշակերտներն էլ ծիծաղեցին: Ես ապուշ-ապուշ նայում էի սրա-նրա երեսին:

Հանկարծ Սարգիս վարպետը կատաղեց: Նա հրամայեց բաց անել առաջ մի, հետո մյուս ձեռքս ափը և սկսեց քանոնով տալ, տուր թե որ կտաս:

Լավ էր, որ քանոնի տափակ կողմովն էր զարկում և ոչ սուր կողմով: Այնուամենայնիվ, ձեռքերս սաստիկ ցավեցին: Ես լաց եղա:

—Անխրատ, — ասաց Սարգիս վարպետը, — ես քեզ երկու անգամ ասացի, որ դասդ ջուր անես, այսինքն անգիր անես ջրի պես, իսկ դու տարել ես գիրքդ թրջել ու բերել: Դե լավ, թող տարգա, դու դասագիրքդ ես ջուր արել, ես էլ քո աչքերը ջուր արի: Տես, մյուս անգամ ասածիս լավ հասկացիր: Եվ դուրս բերելով գրպանից մի մեծ գույնզգույն թաշկինակ, սրբեց աչքերիս ջուրը, այսինքն արտասուքը:

Երկար, շատ երկար ժամանակ աշակերտները չէին մոռանում իմ արածը և միշտ ծաղրում էին ինձ...

Բայց և այնպես ես երկար չմնացի Սարգիս վարպետի մոտ: Մայրս ինձ դուրս բերեց և հանձնեց Տեր-Ավանեսի դպրոցը:

## ՏԵՐ-ԱՎԱՆԵՍԸ

Չիմի լսեցեք, թե այդ Տեր-Ավանեսն ով էր և ինչ:

Դա մի հասարակ գյուղացի էր եղել, եկել էր մեր քաղաքը, գրել-կարդալ սովորել և եկեղեցում տիրացու դարձել: Թե ինչպես էր քահանա ձեռնադրվել, աստված գիտե: Գլխավորն այն է, որ ինքը հազիվ-հազ ավետարանը կարդալ գիտեր, ուսումնարան էր բաց արել և դաս էլ էր տալիս մեզ, ամեն մեկից վերցնելով ամիսը մի ռուբլի:

Եվ ինչ դաս, «այբ ժե հե ու բեն ինի մեն սեն» և այլն, բայց այն էլ ասեմ, որ մեծ աշակերտները կարդում էին սաղմոսագիրք, ավետարան, ավելի ուսյալները՝ աստվածաշունչ, մինչև անգամ ճարտասանություն:

Ես արդեն ուսյալներից էի:

Մի լղար դեմքով, սև թանձր և երկայն մորուքով մարդ էր այդ Տեր-Ավանեսը: Նրա աչքերը միշտ կիսափակ էին, երեսը թթված, կարծես միշտ փորը ցավում էր: Փռշտալիս երեսը խաչակնքում էր և ասում.

Տէր, դու չարը խափանեա:

Երկու բանում նա շատ եռանդուն էր. ուտելում և ծեծելում:

Ամենից ավելի սիրում էր խնձորի տոլմա և փախլավա: Ընկույզի հալվա էլ էր սիրում, բայց ավելի պակաս, քան հավով փլավ:

Մեր ծնողները այդ բանը գիտեին. ուստի ով կարող էր Տէր-Հորը բաժին էր ուղարկում: Ես այսօր էլ զարմացած եմ, թե ինչո այդ մարդը ուտում էր, ուտում. էլի քաղց էր մնում:

Նա ծեծում էր մանավանդ այն աշակերտներին, որոնց ծնողները չէին կարողանում խնձորի տոլմա, կամ ընկույզի հալվա ուղարկել նրա համար:

Ամենից շատ ծեծվում էր Ծամչյանց Ավետը: Այն էլ ասեմ, որ դա մի վերին աստիճանի անհանգիստ տղա էր. շարունակ թռչկոտում էր, պարում, երգում: Երբեմն դասամիջոցներին կանգնում էր ձեռքերի վրա. գլուխը դուրս էր բերում ոտների արանքով և ասում.

—Փի՛չ, փի՛չ. փիչ. փիչ:

Նա սիրում էր սրան-նրան խաղալ կամ կմշտել: Հակառակի պես միշտ իմ կողքին էր նստում և դասի ժամանակ շարունակ կմշտում էր ինձ: Առանց այդ էլ ով ասես, ինձ



կմշտում էր, որովհետև մանուկ ժամանակս ես բավական հաստ էի:

Մի օր Ավետը ինձ այնպես կմշտեց, որ ես գոռացի.

Վա՜յ, վա՜յ:

Ինչ պատահեց,—հարցրեց Տէր-Ավանդը.

երկայն ճիպոտը բարձրացնելով:

—Ճանճը կծեց ախպեր, պատասխանեցի ես:

Բանն այն է, որ ես վախեցա մատնել Ավետին: Նա կարող էր փողոցում անցնելիս ինձ մի լավ ծեծել, որովհետև ինձնից մեծ էր և ուժեղ:

Ճանճի կծելով կարելի՞ է այդպես բղավել, կատաղեց Տէր-Ավանդը:

Բարեբախտաբար, այդ օրը մենք խնձորի տոլմա ունեինք և Տէր-Հայրն արդեն յուր բաժինը ստացել էր, նա ինձ չծեծեց:

Երբեմն Տէր-Ավանդը գալիս էր մեր տուն: Ամեն անգամ «պահապանիչ» էր ասում: Հետո գովում էր իմ ժրությունը և աշխատասիրությունը: Մայրս նրան հյուրասիրում էր չեչի օղիով և մուրաբաներով:

Ծիծաղս գալիս էր, երբ Տէր-Ավանդը մուրաբա էր ուտում: Շատ անգամ ձմերուկի մեղրոտ կճեպը կամ վարդի թերթերը ընկնում էին նրա երկայն մորուքի վրա և [illegible]: Մի անգամ ընկույզի մուրաբայի հետ երկու ճանճ կուլ

Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

տվեց առանց իմանալու: Եվ կարծում եմ այս էր պատճառը, որ մյուս օրը նա մի լավ ծեծեց երկու աշակերտի, որ ճանճերի հետ խաղում էին:

Առհասարակ, հանգուցյալը հաց լավ ուտում էր, համ էլ լավ ծեծում:



# ՎՐԱՍՏԱՆԻ ՍԻՐՏԸ



## ՔԱՂԱՔԻ ԾՆՈՒՆԴԸ

Այս ամսին Վրաստանի աշխատավորները նշում են ռեսպուբլիկայի մայրաքաղաքի 1500 տարին։

Թբիլիսիի հոբելյանը մեծ տոն է ոչ միայն Վրաստանի, այլև մեր երկրի բոլոր ժողովուրդների համար։ Այդ քաղաքի հետ է կապված վրաց ժողովրդի պատմությունը, նրա հին կուլտուրան։

Մեր թվականության չորրորդ դարում, ներկայիս Թբիլիսիի տեղում բերդ-ամրություն է կառուցվում, որը պաշտպանելու էր Քարթլիի թագավորության այն ժամանակվա մայրաքաղաքի՝ Մցխեթի նախամատույցները։ Այդ է պատճառը, որ վրաց հին պատմիչները չորրորդ դարի Թբիլիսին «Մցխեթի բերդ» կամ ամրություն են անվանում։

Արդեն հզորացած և ամրապնդված Թբիլիսին հատուկ ուշադրություն է դարձնում Քարթլիի (Վրաստանի) թագավոր Վախթանգ Գորգասալը, որը թագավորում էր 5-րդ դարի երկրորդ կեսին։ Գորգասալի հրամանով սկսում են Թբիլիսիի կառուցումը։

Թբիլիսիի կառուցման մասին վրացական ժողովրդական բանահյուսությունը մինչև հիմա էլ մի հետաքրքիր ավանդություն է պահպանել։ Այդ ավանդության համաձայն Քարթլիի թագավորը՝ Վախթանգ Գորգասալը իր շքախմբով որսորդության է գնում։ Սպիտակ ձի նստած թագավորի առջևից հանկարծ մի փասիան է թռչում։ Գորգասալը վարժված ձեռքով աղեղը ձգում է, և նետից խոցված թռչունը ընկնում է մոտերքում հողի տակից դուրս եկող ջրի մեջ։ Որսորդական շները ջուրն են նետվում որսը դուրս բերելու համար, բայց շուտով նրանք թողնում են թռչունը և վնգստոցով ափ բարձրանում։ Զարմանում է թագավորը, բայց ավելի է զարմանում, երբ ուղեկիցները ջրից հանում են արդեն եփված փասիանին և հանձնում նրան։ Պարզվում է, որ թագավորի վիրավորած փասիանը եռացող ծծմբաջրի մեջ էր ընկել։ Երկար ժամանակ Գորգասալը ուշադրությամբ դիտում է շրջապատը և վերջում անհողդողդ հրամայում. «Այստեղ թո՛ղ քաղաք կառուցվի»։

Վախթանգ Գորգասալի օրոք քաղաքի կառուցումը չեն ավարտում։ Նրա փոխարեն 6-րդ դարի սկզբներին այս գործը Վախթանգի որդի, թագաժառանգ Դաչին է հասցնում մինչև վերջ և Գորգասալի կտակի համաձայն Թբիլիսին Քարթլիի մայրաքաղաք հայտարարում։

## 26 ԱՆԳԱՄ ԱՎԵՐՎԱԾ ՔԱՂԱՔԸ

Մարդկության պատմությունը բազմաթիվ տեղեկություններ է պահպանել հնագույն քաղաքների ավերման և հողին հավասարեցնելու մասին։

Հազար տեսակի ցավեր է տարել նաև Թբիլիսին, բազմաթիվ անգամ ավերվել, թալանի ենթարկվել,

տեսել համաճարակներ, զգացել առևտրական ճանապարհների տեղափոխման վնասները։ Թշնամու դաժան արշավանքներից ու ներխուժումներից բազմաթիվ անգամ պաշտպանվել է Թբիլիսին։ Ո՛վ ոտք չի բարձրացրել նրա վրա. բյուզանդացիներն ու արաբները, խազարներն ու սելջուկները, թուրքերն ու պարսիկներն ավերել, այրել, թալանել են քաղաքը, ոչնչացրել են նրա բնակչությանը։ 853 թվականի օգոստոսին Բուղան մեծ բանակով պաշարում է Թբիլիսին։ Հայ պատմագիր Թովմա Արծրունին պատմում է, որ թշնամին չի կարողանում քաղաքի բերդ-ամրությունները գրավել։

Վերջին, բայց մի անգամ ևս ծանր վերք է հասցվում Թբիլիսիին։ Քաղաքը բռնակալի ձեռքով թալանվում, այրվում և ավերվում է։ Այս ներխուժումից ութը տարի հետո Թբիլիսիի բնակչության թիվը հազիվ 15000-ի է հասնում։ Վրաց ժողովուրդն իր բախտը կապում է Ռուսաստանի հետ. Քարթլի-Կախեթյան թագավորությունը 1801 թվականին միանում է Ռուսաստանին և Թբիլիսիի համար ստեղծվում է խաղաղ կյանք և հետագա զարգացման հնարավորություն։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԹԲԻԼԻՍԻՆ

Եթե ցարական Ռուսաստանը Վրաստանը համարում էր իր գաղութը, և հոգ չէր տանում Թբիլիսիի մասին, ապա վրաց ժողովուրդը ռուս եղբայրակիցների մոտ ջերմ պաշտպանություն և սեր գտավ։

Ռուս և վրաց ժողովուրդների միմյանց մոտեցման ազնիվ գործում մեծ դեր կատարեցին ականավոր հասարակական գործիչներ Ա. Ճավճավաձեն, Ա. Գրիբոեդովը, Ի. Ճավճավաձեն, Ա. Պուշկինը, Ա. Ծերեթելին, Մ. Լերմոնտովը և ուրիշները։

10-րդ դարի վերջին, ինչպես Ռուսաստանում, այնպես էլ Թբիլիսիում սկսում են կազմակերպել սոցիալ-դեմոկրատական ռևոլյուցիոն խմբեր։

Մոտեցավ ռևոլյուցիայի լուսաբացը։ Մեծ պայքարն սկսվեց և այդ պայքարում առաջնահերթ կռվեց ականավոր ռևոլյուցիոներների մի ամբողջ բանակ։ Այդ ռևոլյուցիոներների հերոսական գործերը շատ էր գնահատում Լենինը։ Ռուսաստանում Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո, Վրաստանում իշխում էին մենշևիկները։ Վրաստանի աշխատավորները բոլշևիկների ղեկավարությամբ դուրս վռնդեցին նրանց և 1921 թվականին Սերգո Օրջոնիկիձեն հաղորդեց. «Մոսկվա, Կրեմլ։ Լենինին, Ստալինին։ Թբիլիսիի վրա սովետական իշխանության կարմիր դրոշն է ծածանվում, կեցցե՛ Սովետական Վրաստանը»։ Ժողովուրդը թեթևություն զգաց, սկսեց նոր կյանքի կառուցումը։ Թբիլիսին դարձավ ծանր արդյունաբերության կենտրոն։

Եվրոպա, Ասիա, ժողովրդական դեմոկրատիայի երկրներն են ուղարկվում Թբիլիսիի մարկայի բազմաթիվ հաստոցներ։

Օրեցօր գեղեցկանում է Վրաստանի սիրտը՝ Թբիլիսին։ Նրա հոբելյանի օրերին Մետեխի ժայռի վրա կկանգնեցվի Վախթանգ Գորգասալի՝ Թբիլիսիի հիմնադրի հուշարձանը։ Գայլի սաղավարտով հեծյալը կնայի ծծմբաջրերի կիրճին, որտեղ մի ժամանակ նա վիրավորեց փասիանին։

Ցնծում է Թբիլիսին, ուրախանում է վրաց ժողովուրդը և մեր մեծ երկրի ժողովուրդներն էլ ուրախ սրտով շնորհավորում են սիրելի քաղաքի ծննդյան 1500-ամյակը։

Թ. ՍԱԽԱՐԻՆՈՎ





# Ժամանց

## ՄԵՐ ՈՂՋՈՒՅՆԸ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՊԱ 1 | ՏՄ 2 | ԻՆ“ 3 | ԵՐ 4 | ՈՆ 5 |
| ՄԵ 6 | ՐՄ 7 | ՈՂ 8 | ՈՆ 9 | ԹՅ 10 |
| ՅՆ 11 | ԱԿ 12 | ԻՆ, 13 | ՆԾ 14 | ԽՈՒ 15 |
| ՋՈՒ 16 | ԻՏ 17 | ԱՆ 18 | ՐԻ 19 | ԱԳ 20 |
| ՊԻ 21 | ԱԼ 22 | „ԿՈ 23 | ՉԵ 24 | ԱՆ 25 |

Այս վանդակներում գրված են տառեր և թվեր: Աշխատեք թվերը դասավորել այնպես, որ հորիզոնական, ուղղահայաց և անկյունագծային յուրաքանչյուր շարքում թվերի գումարը հավասար լինի 65-ի: Եթե լուծումը ճիշտ լինի, ապա վանդակներում դուք կկարդաք կոմերիտմիության ուղղված պիոներների ողջույնը:

*Կազմեց Ֆ. ՏՈՆՈՅԱՆԸ*

## ԵՐԵՔ ՀԱՎԱՍԱՐ ԽՈՒՄԲ

*Ձեր առաջ կա շաշկու քարերի երեք խումբ. 1-ում 11 քար կա, 2-ում՝ 7 և 3-ում՝ 6: Կարող եք քարերը երեք անգամ տեղափոխելով յուրաքանչյուր խմբում ստանալ ութական քար:*

*Անցքի լուծման ժամանակ յուրաքանչյուր խմբին պետք է ավելացնել այնքան քար, որքան նրանում կա: Երկու խմբից միաժամանակ չի կարելի քարեր վերցնել:*




## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 9

ՍԱՏԱՆԱՆ ՈՒ ԽՈՐԱՄԱՆԿ ԳՅՈՒՂԱՑԻՆ:—Առաջինը սկսում է սատանան: Գյուղացին պետք է այն հաշվով բաց անի դռները, որ նախավերջին անգամ բացելուց հետո մնա 5 փակ դուռ: Հերթը սատանայինն է. եթե նա բացի 1 դուռ, գյուղացին կբացի 3-ը, եթե նա բացի 2-ը, գյուղացին էլ 2-ը կբացի, իսկ եթե բացի 3 դուռ, գյուղացին կբացի 1-ը: Բոլոր դեպքերում էլ վերջին 17-րդ դուռը բացելու հերթը կմնա սատանային:

ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐ:—1: Մակու. 2: Ամուր. 3: Կուբա. 4: Ուրալ:

ԿԱՐՈ՞Ղ ԵՔ: 100=12+20+4+64: 12+4=16, 20−4=16, 4×4=16, 64:4=16:


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:*

*ՎՖ 08190. Պատվեր 1048. Տպաքանակ 6500: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 14.X 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:* Գինը 2 ռ.




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

**Այս համարի հետ տրվում է նոր հավելված հոկտեմբերիկների համար**



# ՓՈԽԱՐԻՆՈՂԸ

Գ. ՖԻԼՈՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆԱՂՅԱՆԻ

— Ու՜ֆ-ֆ-ֆ-ֆ-ֆ, հոգնեցի,— ասաց շոգեքարշն ու ծխնելույզից շոգի բաց թողնելով, մտավ դեպո։

— Ի՞նչ կա, պապի, մտահոգ մաշել, շարքից դո՞ւրս ես եկել,— հարցրեց ծառայողը։

— Լսիր, ախպեր։ Ու՜ֆ-ու ֆ-ու ֆ-ուֆ... Այս թե հիմարիկն ես դու։ Երկար տարի է, անխափան աշխատում եմ, ոչ մի անգամ չեմ փչացել, բայց օրերից մի օր գնալու չմնացի, պատասխանեց շամպայնեմ։

— Ամբողջներ, ամբողջներ, մեկ է, շարքից դուրս ես գալու,— ասաց էլեկտրաքարշը, որ կանգնած էր հարևան ռելսերի վրա։

— Դու՛ ով ես, քեզ նման բան կյանքումս տեսած չկամ,— բարկացավ շոգեքարշը։

— Ինչ ես աչքդ չռել, ես էլեկտրաքարշն եմ, լավ նայիր, եկել եմ քեզ փոխարինելու, դու պետք է ծառայությունը թողնես, գնաս հանգստանաս։

— Ֆը՜շ-շ-շ-շ...— զայրացավ շոգեքարշը, այդքան տարիներ աշխատել եմ, անթիվ ու անհամար բարձունքներ եմ մտել, հազարավոր կիլոմետրեր եմ անցել, բայց քեզ նման հիմար դեռ չեմ տեսել։ Իմ երկարամյա աշխատանքից հրաժարվեմ։ Իսկ ո՞վ է փոխարինողս ինձ։ Ջինի՞ թե դու։

— Իհարկե, ես։

— Ինչպե՞ս ես ձեռք գնացքներ տանելու, երբ ծխնելույզ անգամ չունես։

— Ծխնելույզն ինչի՞ս է պետք։

— Ինչպե՞ս թե, հապա ծուխը որտեղի՞ց է դուրս գալու։

— Ես ծուխ չունեմ։

— Իսկ ինչո՞վ ես ջուր տաքացնում։

— Ինձ ջուր պետք չէ։





— Գիտե՞ս ինչ կա,— ասաց շոգեքարշը,— գլուխս մի տանի։ Ո՞վ կհավատա քեզ, որ առանց վառելու, առանց ջրի, առանց շոգու և ծխնելույզի, դու կարող ես տեղիցդ շարժվել։ Էլ դու ի՞նչ շոգեքարշ ես։

— Ես՝ ամենևին էլ շոգեքարշ չեմ։

— Բա ո՞վ ես։

— Ասացի, չէ՞, էլեկտրաքարշ եմ, որովհետև շարժվում եմ ոչ թե շոգու օգնությամբ, այլ՝ էլեկտրականության։ Իսկ դու շոգեքարշ ես, որովհետև քեզ շոգին է շարժում։ Ինձ ոչ վառելիք է պետք, ոչ ջրի կաթսա, ոչ ծխնելույզ, միայն հոսանք է պետք։ Հոսանքին միացնեն թե չէ, մեծ արագությամբ կսլանամ ուր ուզեմ։

— Իսկ հիմա փչացե՞լ ես, ինչ է,— հարցրեց շոգեքարշը։

— Ո՛չ, բոլորովին նոր եմ, բայց դեռ էլեկտրական լարեր չկան, իսկ առանց լարերի տեղիցս շարժվել չեմ կարող։

— Լարերն ինչի՞դ են պետք։

— Հոսանքը լարերով են հաղորդում։

Շոգեքարշն այլևս ոչինչ չհարցրեց, միայն աչքն էր թարթում։

Դրանից հետո մեր ծերացած շոգեքարշը դեռ էլի շատ մարդիկ ու բեռներ փոխադրեց, շատ ու շատ կիլոմետրեր անցավ ու դարձավ, շատ ջուր խմեց ու շատ էլ շոգի բաց թողեց...

Մի անգամ նա կանգնած ջուր էր վերցնում, հանկարծ դիմացից երևաց էլեկտրաքարշը, նա զարմանալի թեթևությամբ, առանց անքոց-փնչոցի, վագոնների մի երկար շարան էր բերում իր ետևից։

— Բարև՛, պապի,— ասաց նա, շոգեքարշի կողքից սահելով։— Ինչո՞ւ ես կանգնել։

— Ջուր եմ վերցնում։

— Լավ ես անում, վերցրու, որ կոկորդդ չչորանա,— ասաց էլեկտրաքարշն ու սլացավ առաջ, հեքիաթային թեթևությամբ քաշելով վիթխարի բեռը։



# ԻՆՉՈ՞Ւ ԵՆ ԼԱԼԻՍ ՓՈՔՐԻԿՆԵՐԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ



Դեռ չծագած
Արևը բոց,
Այս չար տղան
Թռավ փողոց.
Հենց փողոցում
Խաղաց գնդակ.
Լավ էր չընկավ
Ավտոյի տակ...
Մայրը նրան
Տուն է բերում.
Ա՜յ թե ինչու
Լաց է լինում։



Թեպետ Մարոն
Ունի տիկնիկ,
Արջուկ, գնդակ,
Բադիկ, շնիկ,
Սակայն լուցկու
Տուփը առել,
Լուցկիներն է
Մեկ-մեկ վառել...
Տատն էլ վրան է
Զայրանում.
Ա՜յ թե ինչու
Լաց է լինում։



Լաց է լինում
Եվ այս տղան.
Ի՞նչ պատահեց
Հանկարծ սրան.
Պահանջում է
Իր պապիկից,
Որ ձի գնի
Փակ խանութից...
Համառում է,
Տուն չի գնում.
Ա՜յ թե ինչու
Լաց է լինում։



Տես Լուսիկը
Չի լվացվում,
Մայրիկին չի
Ականջ անում։
— Լուսի՛կ, լվա
Դեմքիդ մուրը։
— Ո՛չ, չեմ ուզում
Սառն է ջուրը։
Եվ ծորակին
Չի մոտենում.
Ա՜յ թե ինչու
Լաց է լինում։





Երբ արևը
Վերից ժպտաց,
Հայկի հայրը
Գործի գնաց։
Հայկը տզզաց
Իսկույն ներ,
— Հայրի՛կ, ես էլ
Կգամ քեզ հետ...
Մայրը բռնել
Բաց չի թողնում.
Ա՜յ թե ինչու
Լաց է լինում։



Ճանաչեցեք
Այս տղային.
Ատամներով
Կոտրեց կաղին...
Իսկ գիտե՞ք թե
Ինչ պատահեց,
Մի ատամը
Ջը՜խկ, կոտրվեց...
Եվ բժշկին
Մոտ չի թողնում.
Ա՜յ թե ինչու
Լաց է լինում։



Այս աղջիկն էլ
Լալիս, տզզում,
Տես որ ուտել
Նա չի ուզում։
Էլ ինչ ասես,
Որ չեն տալիս,
Էլ հաց, էլ կաթ,
Էլ միրգ, էլ միս,
Բերանն անգամ
Բաց չի անում.
Ա՜յ թե ինչու
Լաց է լինում։



## ՔԹԻ ԵՎ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

(Կատակ)

Կատյան ուներ երկու աչք, երկու ականջ, երկու ձեռք, երկու ոտք, իսկ լեզուն մի հատ էր, քիթն էլ մի հատ էր։

— Տատիկ, ասա,— խնդրում է Կատյան,— ինչո՞ւ այդ բոլորից ես երկու-երկու ունեմ, իսկ լեզու և քիթ՝ ամեն մեկից մի հատ։

— Նրա համար, թոռնիկս,— պատասխանում է տատիկը,— որ դու ավելի շատ տեսնես, ավելի շատ լսես, ավելի շատ գործ անես, ավելի շատ քայլես, ավելի քիչ դուրս տաս և որտեղ որ պետք չէ՝ քիթդ չխոթես։

Ա՛յ թե ինչու քիթն ու լեզուն մեկական են։ Պա՞րզ է։

ԵՎԳ. ՊԵՐՄՅԱԿ




Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ

Վարդան քեռին Արմիկին
Նվիրեց մի նապաստակ,
Բայց Արմիկն իր նվերը
Անփույթ գցեց պատի տակ։
Երկու ոտքերը պոկեց,
Շպրտեց ո՞վ գիտե ուր։
Զույգ ականջները ծակեց՝
Թելով կապեց շատ ամուր։
Երբ որ քեռի Վարդանը
Արմիկենց տուն է գալիս,
Ամաչում է Արմիկը՝
Նվերը ցույց չի տալիս։



## Փ ի ս ի կ ը

Անձրև է գալիս,
Թափվում հորդառատ,
Փիսին է լալիս,
Արցունքով առատ։

Նայում է փիսին
Ամպերին ճերմակ,
Նայում է փիսին
Ափսեին դատարկ։

Ա՜խ, ի՜նչ կլինի,
Գոնե մի անգամ,
Այդ ափսեն լցվեր
Կաթով [illegible]։

# ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶՈՒՄ



Ա. ԹՈՒՐՍԱՋՅԱՆ

Ընկերներ ենք մենք ուրախ,
Թռչկոտում ենք, վազվզում,
Օրն անցնում է ծիծաղով
Մանկապարտեզում:

Շատ ենք սիրում նկարել,
Գիտենք երգել ու պարել,
Այնքա՜ն բան ենք սովորել
Մանկապարտեզում:

Երբեք մենակ չենք լինում,
Ընկերներով հավաքվում
Բարձր, փայտից շատ սիրուն
Տուն ենք կառուցում:

Հետո՝ ջրհոր ու պարտեզ,
Ճանապարհներ ոլորուն,
Մինչ գծում ենք, նկարում
Մանկապարտեզում:

Իսկ երբ քիչ էլ մեծանանք,
Ընկերներիս հետ մի օր
Կկառուցենք մեծ տներ՝
Դպրոց, գյուղ ու կամուրջներ—
Ինչ որ այստեղ ենք շինել՝
Մանկապարտեզում:



Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

# ԿԱՏՎԻ պոչը



(Հայկական հեքիաթ)

Մի ճնճղուկ բույն էր դրել, ձու էր ածում։ Մի մուկ էլ սովորել էր, ամեն տարի էգ ճնճղուկի ձվերը տանում էր։ Խեղճ ճնճղուկը չգիտեր, թե ինչ անի։

Մի օր էլ ձու ածելուց հետո, ելավ մտավ ժայռի տակը, թաքնվեց։ Տեսավ՝ մուկը թաքուն-թաքուն եկավ, ձվերը տարավ։

— Ի՞նչ անեմ, ի՞նչ չանեմ,— ասաց ինքն իրեն ու ելավ գնաց կատվի մոտ գանգատ։

— Կատու ջան, կատու, քեզնից մի բան եմ խնդրում։



— Ի՞նչ է պատահել, ճնճղուկ ջան,— հարցրեց կատուն։

— Ես ամեն տարի բույն եմ դնում, ձու ածում, մուկը գալիս ձվերս տանում է, չի թողնում ձագ հանեմ, ի՞նչ անեմ։

— Ես ի՞նչ կարող եմ անել, խեղճ ճնճղուկ,— ասաց կատուն։

— Մկներին ասա, ձվերիս ձեռք չտան, քեզ մի ձագ կտամ։

— Մկների տեղը որտե՞ղ է,— հարցրեց կատուն։

Ճնճղուկը տարավ, ցույց տվեց մկան բույնը։

Կատուն մլավեց ու ասաց.

— Հեյ վա՜խ, հեյ վա՜խ, ով որ էն անիծյալ ճնճղուկի ձվերը կերել է, թող գա, ասի, ես նրան էնպիսի տոմս տամ, որ իմ ցեղակիցները նրա ցեղակիցներին այլևս չկպչեն։

Մի մուկ բնից դուրս եկավ ու ասաց.

— Ե՛ս եմ կերել։

— Ոչ թե ձվերը պիտի ուտեիր, դեռ բույնն էլ պիտի քանդեիր,— շարունակեց կատուն։

— Որ դու էդ տոմսը տաս, բույնն էլ կքանդեմ։

— Դե, մի քիչ մոտ արի, տոմսը տամ։



Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

— Օհո՜, ես քո սուր ճանկերը տեսել եմ, խաբում ես։

Կատուն երդվեց. մուկը կամաց-կամաց մոտեցավ։ Կատուն, որ ճանկով խփեց, մկան լեղին տեղնուտեղը ցամաքեց։

— Քեզ ոչինչ էլ չեմ անի, գնա քո ցեղակիցներին բեր, որ ամենքիդ էլ տամս տամ,— ասաց կատուն։

Մուկը թե.

Ինձ չեն հավատա, մի բան տուր, տանեմ ցույց տամ, որ հավատան ու գան։

— Պոչիցս մի մազ քաշիր ու տար։

Մուկը մազը քաշեց, տարավ, կանչեց ձագերին ու ազգականներին, ասաց.

— Եկեք, ինձ աչքալույս տվեք, ձեզ լավ լուր եմ բերել։ Գնացել, չալ կատվի հետ ընկերացել եմ։

Նրանք չհավատացին.

— Վա՜յ-վա՜յ, սուտ ես ասում, կատուն, որ մուկ տեսնի, ողջ կթողնի՞։

Մուկը հանեց մազն ու ցույց տվեց, մկներն էլ հավատացին։

Նա հավաքեց մկներին, գցեց ետևն ու եկավ կատվի մոտ։

Կատուն էլ եկավ, մի հարթ կալում նստեց։ Մկները, որ մոտեցան, կատուն ընկավ մեջները, բոլորին էլ ջարդեց։

Կալը հարթ, ծակ ու ծուկ չկար, ո՞ւր պիտի փախչեին։ Էն առաջին մկանն էլ ճանկով զարկեց ու ասաց.

— Ինչի՞ ես կանգնել, արի գնանք, քեզ էլ տամս տամ։











# ԱՐՋՈՒԿԻ ՏՈՆԸ

ԷԼՅԱ ՍԱՐԳՍՅԱՆ

Նկ. Հ. ԳԱԼԵՆՑԻ

Անտառային կածաններով
Քայլում էին մեկտեղ սիրով՝
Ջագուկները գայլ մայրիկի,
Խլշիկները մայր շլդիկի,
Աղվեսները չեկլիկ-մեկլիկ,
Սարդիկները թխլիկ-մխլիկ,
Բզեզները սևիկ-մևիկ։
Անտառամերձ խուլ թփուտից,
Ծղրիդների մութ խանութից
Գնել էին խաղալիքներ,
Շորեր, մրգեր տեսակ-տեսակ,
Տանում էին իրենց ընկեր
Արջ ապորը կարճահասակ։
Իր ծննդյան տոնի առթիվ
Հյուրեր ուներ նա բազմաթիվ։
Շուտով հասան ու միասին
Ներկայացան նոխ հանդեսին։
Արջ ապերը ուրախ է շատ,
Իսկ նրա մեծ եղբայրն հպարտ
Նվերներն է մեկ-մեկ բերում,
Պահարանում տեղավորում։
Եվ հյուրերը մեր արջուկին
Ողջունում են, ջերմ համբուրում։

Գրկախառնվում կրկին, կրկին,
Վեր-վեր թոցնում ու գուրգուրում։
Քեֆ են անում ու քրքջում,
Երգում, պարում, ուռա կանչում։
Ու կաղնու տակ կանաչազարդ,
Ուր զեփյուռն է փչում հանդարտ,
Պառկում են, որ մի քիչ քնեն,
Հանգստանան ու վեր ելնեն...
Դեհ, որպեսզի քնեն նրանք,
Մեր հեքիաթին եկեք վերջ տանք։






(Դանիական)

Ի. ՍԻԳՍԳՈՐԴ

Նկ. ԱՐՆԵ ՈՒՆԳԵՐՄԱՆԻ

Վաղ առավոտ էր։ Փոքրիկ Պալլեն արթնացավ ու նայեց շուրջը։ Ո՛չ ոք չկար սենյակում։ Նա ճմռեց աչքիկները, վեր կացավ ու հագնվեց։ Նայեց ճաշասենյակը, հետո խոհանոցը, բայց հայրիկն ու մայրիկը չկային ոչ մի տեղ։

Այ քեզ բան. տանը ոչ ոք չկա։ Ո՞ւր են գնացել։

Նա իջավ փողոց։ Գնաց որոնելու հայրիկին ու մայրիկին։

Պալլեն մտավ կաթի խանութը, բայց ներսում ոչ վաճառող կար, ոչ գնորդ։

Պալլեն զարմացած նայեց շուրջը՝ փողոցներում, խանութներում, արներում, ոչ մի տեղ մարդ չէր երևում։

Կարծես բոլորը չքացել էին։

«Ինչ լավ է այսպես, հիմա ինչ ուզենամ, կանեմ», մտածեց տղան և ուրախ-ուրախ վազեց մտավ քաղցրեղենի խանութը։ Նա շոկոլադ վերցրեց ու բավ կոխեց բերանը։

Պալլեն, իհարկե, գիտեր, որ անհարմար բան է անում, բայց քանի որ մեն-մենակ էր աշխարհում, էլ ու՞մից ամաչեր։

Պալլեն խանութից դուրս եկավ տեսակ-տեսակ կոնֆետներ գրպանները և ծոցը լցրած։ Ուտում էր ու թափառում ամայի փողոցներում։

Մի տեղ փողոցում տեսավ կանգնած է մի տրամվայ։ Մտավ վագոն





ու նստեց վագոնավարի աթոռին: Նա վստահորեն պտտեց ղեկը, իբրև թե վագոնավար է:

«Զըր՛րնգ», — հանկարծ ձայն տվեց տրամվայն ու պոկվեց տեղից: Պալլեն շատ կվախենար, եթե չմտածեր, որ ինքը իսկական վագոնավար է: Պալլեն դրեց վագոնավարի գլխարկը: Գլխարկն այնքան մեծ էր, որ խրվեց մինչև քիթը: Հետո նա ոտքը պարզեց, որ զանգ տա, բայց ոտքը չհասավ: Պալլեն ձայն տվեց.

— Զըր՛րնգ, զըր՛րնգ, զըր՛րնգ...

Բայց դե զանգն ինչի՞ էր պետք. չէ՞ որ փողոցներում ոչ ոք չկար:

Տրամվայը սլանում էր դեպի հրապարակ: Պալլեն տեսավ, որ առջևում մի ուրիշ տրամվայ է կանգնած. ուրեմն էլ առաջ գնալ չի լինի: Բայց նա չգիտեր, թե ինչպե՞ս կանգնեցնի տրամվայը: Պալլեի տրամվայը թափով խփվեց մյուս տրամվային ու խեղճը՝ իր խցիկից գլուխկոնծի տալով գնաց ընկավ մայթի ծաղկամարգի մեջ: Բայց, ա՛յ քեզ բան, նրան ոչինչ չեղավ:

Նա տեղից ելավ, թափ տվեց շորերը ու շարունակեց իր ճանապարհը: Շատ գնաց, թե քիչ, մեկ էլ փողոցի վրա տեսավ մի մեծ տուն: Դա բանկն էր, որտեղ մարդիկ պահում էին իրենց փողերը: Ներս մտավ ու մի տոպրակ դրամ վերցրեց:

Պալլեն, ձայնը գլուխը գցած, երգելով գնում էր: Հիմա նա շա՜տ-շա՜տ փող ուներ և կարող էր գնել ինչ որ ուզենար:






Նա իր համար սիրուն-սիրուն խաղալիքներ կգնի, կունենա նաև հեծանիվ, շրթնահարմոն, գնդակ, ինչ ասես որ չի ունենա։

Եվ ահա Պալլեն մոտեցավ խաղալիքների խանութին։ Բայց ափսոս, որ ոչ վաճառող կար, ոչ գանձապահ։ Պալլեն տխրեց և տոպրակի ամբողջ դրամը թափեց փողոցում ու հեռացավ։

Շատ գնաց, թե քիչ, մեկ էլ տեսավ մի մեծ հրշեջ մեքենա։ Թռավ, մտավ խցիկը ու նստեց ղեկի մոտ։

— Ղո՜ւ, ղո՜ւ, ղո՜ւ...

Նա սեղմեց բոլոր սեղմակները և ձգեց բոլոր լծակները։ Մոտորը հանգաց ու հսկա մեքենան շարժվեց աղաղակելով։ Պալլեն ամուր կպավ ղեկին։ Ինչ լա՜վ է մեքենա վարել։ Պալլեն շրջեց ամբողջ քաղաքը, բայց ոչ մի տեղ հրդեհ չկար։ Վերջապես մոտորը խլացավ և մեքենան կանգնեց։ Պալլեն ուրախ-ուրախ գնաց մտավ զբոսայգի, որտեղ նա հաճախ խաղում էր ուրիշ երեխաների հետ։

Նա քայլում էր ուղղակի խոտերի ու ծաղիկների վրայով։ Պալլեն հիանալի տեսնում էր այն թիթեղը, որի վրա գրված էր.

«Խոտերի վրայով քայլելը խստիվ արգելվում է»։

Բայց դե նրա համար միևնույն էր, չէ՞ որ նա մենակ էր աշխարհում։






Պալլեն կարոտեց ընկերներին, հայրիկին ու մայրիկին, մանավանդ՝ մայրիկին... Բայց հենց որ տեսավ այգու մուտքի մոտ կանգնած մարդատար ավտոմեքենան, ուրախ-ուրախ վազ տվեց, նստեց ու սկսեց շրջել քաղաքում։



Մանկական այգու հրապարակում կախված էին ճոճանակները։ Պալլեն հաճույքով կճոճվեր, բայց դա այնքան էլ հեշտ չէր, բա ո՞վ կնստի ճոճանակի մյուս ծայրին։ Այ, եթե այստեղ լինեին Հերդան ու Նիլսը։ Բանից դուրս է գալիս, որ այնքան էլ հաճելի չէ մեն-մենակ լինել աշխարհում։






Գուցե որևէ տեղ դեռ մարդիկ կան: Վերջապես նա հասավ օդանավակայան: Այնտեղ կանգնած էր մեծ ու փայլփլուն մի ինքնաթիռ:

Գալլեն մտավ ինքնաթիռի խցիկը և թռավ բա՜րձր-բա՜րձր, մինչև աստղերը:

Ինքնաթիռը բարձրացավ ու բարձրացավ: Մեկ էլ ահա զարկվեց ինչ-որ բանի: Դա, իհարկե, լուսինն էր: Խեղճ Գալլեն գլխիվայր ներքև սլացավ, վախից աղաղակեց և արթնացավ: Նա պառկած էր իր մահճակալին:

Ա՜յ թե ինչ. հասկացավ, որ այդ բոլորը երազում էր տեսել: Նա ժպտաց արցունքների միջից:

Հարևան սենյակից մայրիկը լսեց Գալլեի ձայնը և ներս մտավ.

— Գալլե՛, ի՞նչ է եղել քեզ, ինչո՞ւ ես լալիս:

— Վա՜յ, մայրիկ, երազիս տեսա, որ ես մենակ եմ աշխարհի երեսին: Ես կարող էի ամեն ինչ անել, բայց ինձ համար ձանձրալի էր մենակ մնալը: Լավ է, որ երազ էր:

Գալլեն ցատկեց անկողնուց, հագնվեց և ահա նորից այգու հրապարակում է, իր ընկերների հետ:

Ինչ լա՜վ է միասին խաղալ:














Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Անցնում էր բադը կողքով կրկեսի.
Տեսավ նկարը վարպետ աղվեսի.
Նա թաթիկներով թռցնում էր վեր
Ու նորից բռնում մի քանի ձվեր։
— Պա՜հ, դա ի՞նչ է որ. ես ինքս՝ էլ կանեմ.
Սպասեք մի, թող շուտ բույնս հասնեմ...
Ու նա անհամբեր վազ տվեց թափով,
Հանեց բնից իր ձվերն շտապով։
Ներկեց գույնզգույն ու վեր թռցրեց.
Բայց, ա՜խ, շփոթվեց, իրե՛ն կորցրեց...
Ձվերը վերից թափվեցին դնչի՛ն —
Ու ոտքից-գլուխ ներկեցին խեղճին։

# «ԹԵՎԱՎՈՐ» ԳԱՅԼԱՁՈՒԿԸ

Առաջին և երկրորդ դասերի ընթացքում Արամը միտք էր անում,— ասե՞լ, թե չասել տղաներին և մեծ դասամիջոցին որոշեց ասել։ Միայն թե չուզեց ամենագլխավորից սկսել։ Վախենում էր, որ իրեն չեն հավատա։

— Ես այսօր ջրախորշում գայլաձուկ տեսա...— սկսեց նա։

— Տեսա՞ր... հեգնանքով ծիգ տվեց Սուրիկը։— Իսկ ես ոչ միայն տեսա, այլև բռնեցի ա՛յ, այսքան մեծ։

Եվ Սուրիկը ձեռքերը ուսերից լայն բռնելով ցույց տվեց ձկան մեծությունը։

— Իսկ իմ տեսածը իմ հասակի չափ էր,— շարունակեց Արամը։

— Չափվեցի՞ք իրար հետ, ինչ է։

— Հա՛, չափվեցինք... հենց որ տեսա, անմիջապես փախա ջրախորշից։

— Վախեցար գետնի վրա վազելով հետևի՞ցդ կընկնի։

— Գետնի վրա չէ, այլ օդում,— վրա տվեց Արամը.— գայլաձուկը թևեր ուներ։

— Իսկ կտտոշներ չե՞ս նկատել։

Արամին շրջապատել էին տղաները։ Նա իր վրա ջղայնանում էր. պետք չէր ասել։ Եթե ինքն էլ մի այսպիսի բան լսեր, առաջինը կծիծաղեր պատմողի վրա։



Մյուս դասամիջոցին ամբողջ դպրոցն արդեն գիտեր «Թևավոր» գայլաձկան մասին։ Արամն ստիպված եղավ զանգից շուտ դասարան մտնել, իսկ մյուս դասին, վերջին նստարանից Թամարան ծվծվաց...

— Ընկեր Տոնոյան, Արամն այսօր թևավոր ձուկ է տեսել։

— Ինչպիսի՞ ձուկ,— չհասկացավ դասատուն։

— Գայլաձուկ, թևերով ինչպես ագռավը։ Նա թռել է Արամի հետևից, մինչև դպրոց։

Արամը չհամբերեց և թռավ տեղից։

— Ճիշտ չէ, ոչ ոք իմ հետևից չի թռել... Իսկ թևավոր գայլաձուկ ես տեսա։

— Թևավո՞ր,— կրկնեց ուսուցիչը և ուշադիր նայեց աշակերտին։

Արամին թվաց, թե դասատուն էլ է ծիծաղում։

— Լա՛վ... կստուգենք,— մտածկոտ ասաց ընկեր Տոնոյանը։

Մի քանի օրից հետո, ընկեր Տոնոյանը դասարան մտավ հսկայական գայլաձուկը ձեռքին։ Երեխաները զարմանքից հառաչեցին։

Այսօր դպրոց գալիս, նա շրջանց կատարեց, որպեսզի տեսնի, թե ձկները լճից գետը չե՞ն հասել ձկնկիթ դնելու։ Դրան էին սպասում նաև բոլոր երեխաները։

Նա երկար նայում էր ջրին, փոքրիկ ձկնիկներ տեսնելու հույսով։ Հանկարծ ջրի ափին, անցյալ տարվա սևացած խոտերի խուրձի մեջ մի այնպիսի բան տեսավ, որ գլխարկը գլխից վեր բարձրացավ։ Փթանոց գայլաձուկը գլխով խրվել էր խոտերի մեջ, իսկ նրա մեջքին աճել էին երկու հսկայական թևեր։ Թևերը մեկ բացվում էին, մեկ փակվում... Արամը վախից բղավեց ու փախավ։

Եվ ահա ոչ ոք չի հավատում։

Անգամ Արամի մտերիմ ընկերը՝ Վարդանիկն ասաց.

— Ես չգիտեի, թե դու այդպիսին ես...

— Ինչպիսի՞ն։

— Այդպես... հետամնաց... հավատում ես ամեն տեսակ հրաշքների։

Գայլաձուկը իրոք թևավոր էր... Ընկեր Տոնոյանը շրջեց ձուկը և բոլորը տեսան, որ թևերը գայլաձկանը չեն, այլ նրա մեջքին խրված սպիտակ-դարչնագույն թռչունինը։

— Բանն այն է, երեխաներ,— ասաց ընկեր Տոնոյանը,— որ ջրարծիվը իր ուժերից վեր ավար է ընտրել իր համար։ Նա գայլաձկան մեջքին է խրվել, երբ նա ճահճուտն էր մտնում և իր զոհի հետ միասին իջել է հատակը։ Ես հատուկ գնացել էի այս գայլաձկան հետևից, ուզում էի օգնել ձեր ընկերոջը։ Չէ՞ որ առանց իրեղեն ապացույցի, դուք այդպես էլ Արամին ստախոս կհամարեիք։

*«ՅՈՒՆԻ ՆԱՏՈՒՐԱԼԻՍՏ» ամսագրից*



*Թարգմ. Ն. ԴԵՄԻՐՃՅԱՆ*

